Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ




№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։




# ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆՔ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ


Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀԿՊ Վեդու շրջկոմի առաջին քարտուղար


Հայաստանի Կոմունիստական պարտիան միշտ էլ խոշոր ուշադրություն է դարձրել մեր երկրում բամբակագործության հետագա զարգացման վրա։ Պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց 1965 թվականին բամբակի արտադրությունը հասցնել 5,7—6,1 միլիոն տոննայի կամ 35—45 տոկոսով ավելի, քան եղել է 1957 թվականին։

Երկրին ավելի շատ բամբակ տալու մասին պարտիայի կողմից առաջադրված այդ խնդիրը պատվով կատարելու համար ուժ ու եռանդ չեն խնայում նաև Վեդու շրջանի բամբակագործները։ Նրանք դեռևս այս տարվա գարնանը իրենց շրջանային հավաքում քննության առան բամբակագործության բնագավառում նախորդ տարվա արդյունքները և այն խնդիրները, որ իրենք պետք է կա-




8220-Կ.Հ.



5807-59

տարեն առաջիկայում։ Նույն հավաքում բամբակագործները պարտավորվեցին այս տարի լավագույն մշակության ու խնամքի միջոցով յուրաքանչյուր հեկտարից ստանալ 25 ցենտներ բամբակի հումք։ Շրջանի շատ կոլտնտեսություններ, որոնց թվում Արարատի, Նոր Կյանքի, Խալիսայի, Շիրազլուի, Թայթանի կոլտնտեսությունները խոստացան բամբակի ամեն մի հեկտարից ստանալ 28—30 ցենտներ բերք։ Ավելի բարձր պարտավորություններ ստանձնեցին առանձին օղակներ ու բրիգադաներ։ Օրինակ, Թայթանի կոլտնտեսության Խոսրով Պապիկյանի բրիգադան պարտավորվել է իր բրիգադայի մշակած 30 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 33 ցենտներ բամբակ, իսկ Շիրազլուի կոլտնտեսության Ս. Ռամազանովայի օղակը՝ 35 ցենտներ բամբակ։ Պետք է նշել, որ լայն հնարավորություններ կան ոչ միայն այդ պարտավորությունները կատարելու, այլև գերակատարելու համար։

Շրջանի աշխատավորները առաջին անգամ չէ, որ նման բարձր պարտավորություններ են ստանձնում։ Անցյալ տարի նրանք բամբակի ամեն մի հեկտարից ստացան 23



ցենտներ բերք և հաղթանակով դուրս եկան սոցիալիստական մրցությունից։

Բամբակագործության բնագավառում մեր կոլտնտեսությունների երկարամյա փորձը ցույց է տալիս, որ բարձր բերք կարելի է ստանալ ցանքի համար հողը լավ նախապատրաստելու, ցանքը տեսակավոր սերմերով կատարելու, այն խնամքով մշակելու միջոցով։ Հենվելով առաջավոր փորձի վրա և ճշտորեն կիրառելով ագրոկանոնները, շրջանի շատ բամբակագործներ վաղուց արդեն տիրապետել են հողից բարձր բերք ստանալու տեխնիկային։

Այս տարի շրջանի կոլտնտեսությունները 2 հազար 400 հեկտար տարածության վրա բամբակի ցանքը կատարեցին գյուղատընտեսական լավագույն ժամկետներում, նախօրոք պարարտացված բերրի հողերում։ Դրա շնորհիվ այժմ փարթամորեն աճել են բամբակենու բույսերը, որոնք առատ բերք են խոստանում։ Բոլոր կոլտնտեսությունները բամբակենու ցանքը կատարել են «108—Ֆ» սորտի սերմացուով, որը բերքատվության բարձրացման գործում մեծ առավելություն ունի և ավելի դիմացկուն է։

Արդեն ավարտվել են բամբակենու 4-րդ մշակության աշխատանքները, կուլտիվա-



digitised by A.R.A.R.@

ցիան և փխրեցումը, ավարտված է նաև 2-րդ սնուցման և սկսվել են 3-րդ սնուցման աշխատանքները այն տարածությունների վրա, որտեղ բույսերը համեմատաբար ավելի նվազ են։

Ներկայումս կոլտնտեսություններում արագ թափով առաջ են գնում բամբակի ծեքատման աշխատանքները, որը արագացնում է կնգուղների հասունացումը, իսկ որոշ տեղերում պայքար է տարվում վնասատուների դեմ։ Ի դեպ պետք է ասել, որ այս տարի վնասատուները այնքան էլ շատ չեն, որովհետև նրանց դեմ ճիշտ ժամանակին քիմիական պայքար է տարվել։

Շրջանի կոլտնտեսությունները խոշոր աշխատանք են կատարել բամբակենու մշակությունը և բերքահավաքը մեքենայացնելու ուղղությամբ։ Ընթացիկ տարում կոլտնտեսությունները 420 հեկտար տարածության վրա ցանքը կատարել են քառակուսի բնային եղանակով և մշակության բոլոր տեսակի աշխատանքները տարվել է մեքենաների միջոցով։ Բամբակի ցանքի և մշակության գործում ջանք չխնայեցին մեխանիզատորներն ու գյուղատնտեսության մասնագետները։ Առաջավորների փորձով մեր բամբակագործները համոզվեցին, որ քառակուսի-



բնային եղանակով կատարած ցանքերը ավելի եկամտաբեր են և ավելի էժան են նստում կոլտնտեսության վրա, որովհետև լրիվ և արդյունավետ են օգտագործվում մեքենաները և զգալիորեն կրճատվում են ձեռքի աշխատանքները։

Վերջերս ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշում ընդունեցին բամբակագործության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումն ապահովելու միջոցառումների մասին։ Այդ որոշմամբ խնդիր է դրվում հատուկ ուշադրության և ամենայն աջակցության արժանացնել առաջավորների շարժումը բամբակագործական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման օգտին, լրիվ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան, բարձրացնել բերքատվությունը և այդ ճանապարհով իջեցնել բամբակի ինքնարժեքը։

Սակայն պետք է խոստովանել, որ այս ուղղությամբ մեր կատարած աշխատանքը դեռևս գոհացուցիչ չէ։ Մենք պետք է անենք ամեն բան, որպեսզի բարձրանա աշխատանքի արտադրողականությունը և դրա հետ միասին իջնի բամբակի ինքնարժեքը։

Բամբակենու բույսերի մշակության գոր-

ծում լավ են աշխատում հատկապես Ղարալար, Արարատ, Խալիսա, Նոր Կյանք, Ավշար գյուղերի կոլտնտեսությունները։ Ղարալար գյուղի Ա. Յուսուբովի բրիգադայի բամբակի դաշտերում, որը մշակում է 40 հեկտար տարածություն, բույսերը զերծ են բոլոր տեսակի հիվանդություններից ու վնասատուներից և առատ բերք են խոստանում։ Այդ նույն բրիգադայի Ա. Միրզախանյանի օղակը, որը 32 ցենտներ բամբակի հումք ստանալու պարտավորություն է ստանձնել, պատվով է կատարում իր խոստումը և կան նախադրյալներ, որ օղակը ինչպես միշտ, այս տարի ևս ետ չի մնա իր մրցակիցներից։

Շրջանի բամբակագործների մեջ լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Այժմ ամեն մի կոլտնտեսության բրիգադա և օղակ պայքարում է պատվով կատարել իր խոստումը։

Այսպես, Թայթան և Ղարալար գյուղերի կոլտնտեսությունների բամբակագործները ահա 4-րդ տարին է, ինչ մրցում են միմյանց հետ և այդ մրցությունը ամեն տարի իր դրական արդյունքն է տալիս։ Ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու նպատակով նրանց պատվիրակությունները լինում են միմյանց մոտ, կա-



տարում են փորձի փոխանակում և անում արժեքավոր առաջարկություններ։

Շրջանի բամբակագործների մեջ մեծ համբավ են վայելում բրիգադիրներ՝ Խ. Պապիկյանը, Հ. Առաքելյանը, Ց. Գալստյանը, բամբակագործներ Գ. Աբրահամյանը, Ե. Գրիգորյանը, Հ. Վարդանյանը, Ջ. Ղազարյանը, Ս. Էմրչյանը, Ն. Սուքիասյանը, որոնք ամեն տարի իրենց մշակած տարածություններից բարձր բերք են ստանում։

Շրջանի բամբակագործները այժմվանից մի շարք միջոցառումներ են ձեռնարկում բամբակի մեքենայական բերքահավաքին նախապատրաստվելու ուղղությամբ, վերանորոգվում են բամբակահավաք մեքենաները, ձեռք են բերվում նորերը։

Բամբակի բարձր բերքի համար պայքարը շարունակվում է։

Վեդու շրջանի բամբակագործները, որոնք այս տարի բամբակի լավ բերք են աճեցրել, կանեն ամեն ինչ առատ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու, ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։

---

## ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Գորիսի շրջսովետի գործկոմի նախագահ

*Մտնելով յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ՝ Գորիսի շրջանի գյուղատնտեսության աշխատողները պարտավորություն են ստանձնել այս տարի հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 11,5 ցենտներ բերք, իսկ ծխախոտի ամեն մի հեկտարից 11 ցենտներ հումք և նախատեսված պլանի համեմատությամբ զգալիորեն ավելացնել կարտոֆիլի, բանջարեղենի, խաղողի և պտուղների բերքատվությունը։ Լուրջ պարտավորություններ են ստանձնել նաև մեր անասնապահները։ Նրանք պարտավորվել են յոթնամյակի առաջին տարում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց պլանով նախատեսված 127-ի փոխարեն*



*արտադրել 130 ցենտներ կաթ, 37-ի դիմաց՝ 40 ցենտներ միս, 342-ի դիմաց՝ 360 կիլոգրամ բուրդ և 5.714-ի դիմաց՝ 5.800 ձու, կամ կաթի համախառն արտադրանքը հասցնել 6.985 տոննայի, մսինը՝ 2 հազար տոննայի, բրդինը՝ 1.720-ի փոխարեն 1.810 ցենտների, ձվինը՝ 600 հազար հատի։ Նախատեսված պլանի համեմատությամբ զգալիորեն ավելի են նաև ֆուրաժային կովի կաթնատվության և յուրաքանչյուր ոչխարից ստացվող բրդի արտադրության, անասունների գլխաքանակի ավելացման, կերի կայուն բազայի ստեղծման և տնտեսության ճյուղերի գծով ստանձնած պարտավորությունները։*

*Այժմ կոլտնտեսային գյուղի մարդիկ՝ մեր այգեգործները, դաշտավարները և անասնապահները ոգեշնչված ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումներով, ջանք չեն խնայում կոլտնտեսություններում, բրիգադաներում ու անասնապահական ֆերմաներում իրենց ստանձնած պարտավորությունները կատարելու և մեր հայրենիքում կոմունիզմի կառուցման գործում իրենց արժանավոր լուման մտցնելու համար։*

*Իրենց այդ պարտավորությունների կատարման գործում մեր շրջանի աշխատավո-*

րությանը նոր թափ ու եռանդ հաղորդեցին ՍՄԿՊ Հունիսյան պլենումի որոշումները, պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովի ճառը և օրերս ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության նախագահ ընկ. Կ. Ե. Վորոշիլովի կողմից մեր ռեսպուբլիկային Լենինի շքանշան հանձնելը։

Անցած ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ մեր շրջանի աշխատավորները պատվով են կատարում իրենց խոստումը։

Զգալի հաջողությունների են հասել մեր դաշտավարները։ Ագրոկանոնների համաձայն կատարելով 10.500 հեկտար հացահատիկի ցանքն ու մշակությունը, նրանք աճեցրել են բարձր բերք։ Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի», Տեղ գյուղի «Սովետական Բանակ» և Կորնիձորի Կիրովի անվան կոլտնտեսություններում սկսվել է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը։ Յուրաքանչյուր հեկտարից այստեղ ստացվում է 16—18 ցենտներ հացահատիկ, իսկ առանձին բրիգադաներում ավելի շատ բերք է ստացվում։ Բազմակողմանիորեն լավ նախապատրաստվելով բերքահավաքին, լավ արդյունքներ ունեն նաև բերքահավաքը սկսած մյուս կոլտնտեսությունները։

Այս տարի բարձր բերք են աճեցրել մեր



ծխախոտագործները։ Արդեն ամենուրեք սկսված են ծխախոտի տերևաքաղի աշխատանքները։ Խանածախ, Խնձորեսկ, Գորիս, Բռուն, Քարաշեն և մյուս գյուղերի ծխախոտագործները հավաքում են ծխախոտի բարձր բերք և առաջին բարձրորակ հումքն են հանձնում պետությանը։ Ծխախոտագործները լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ամեն ինչ անում են իրենց խոսքը գործ դարձնելու։

Բարձր բերք են աճեցրել այգեգործները։ Նրանք զգալիորեն գերակատարեցին այգետընկումների պլանները։ Պտղատու այգիները լավ մշակելու, խնամելու միջոցով աճեցրել են պտուղների, խաղողի և բանջարեղենի առատ բերք։ Կոլտնտեսություններն արդեն հավաքում են այգիներից և բոստաններից իրենց առատ բերքը։ Առաջին արդյունքները ցույց են տալիս, որ մեր այգեգործները անպայման կկատարեն իրենց խոստումը։

Ավելի գոհացուցիչ է մեր անասնապահների աշխատանքը։ Անցած 6 ամիսների ընթացքում զգալիորեն գերակատարվել է անասունների գլխաքանակի տարեկան պլանը։ Մեր կոլտնտեսությունները պլանից ավելի ունեն մոտ 5 հարյուր խոշոր և 10 հա-



digitised by A.R.A.R.@

զար գլուխ մանր եղջերավոր անասուն: Գերակատարված են նաև խոզերի գլխաքանակի ավելացման գծով ստանձնած պարտավորությունները:

Անցած վեց ամսվա արդյունքները վկայում են, որ պատվով կկատարվեն նաև կաթի, մսի, բրդի և անասնապահական մյուս մթերքների արտադրության գծով մեր վերցրած պարտավորությունները: Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, անցած 6 ամսվա ընթացքում կաթի արտադրությունը ավելացել է 2 հազար հինգ հարյուր ցենտներով, մսի արտադրությունը՝ 500 ցենտներով: Զգալիորեն ավելացել է նաև մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը: Այդ նույն ժամանակամիջոցում յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է 26 լիտրով: Այս տեսակետից խրախուսելի աշխատանք են կատարում Խնձորեսկի «Լենինյան ուղի» կոլտնտեսության անասնապահները, որոնք անցյալ տարվա համեմատությամբ անցած ամիսների ընթացքում ամեն մի կովի կաթնատվությունը ավելացրել են 45 լիտրով: Այդ բարձր արդյունքների համար կոլտնտեսության անասնապահները օրերս նվաճեցին ՀԿՊ Գորիսի շրջկոմի և շրջսովետի գործկոմի փո-



խանցիկ կարմիր դրոշը: Խնձորեսկի անասնապահները բարձր կաթ ստացան նաև հուլիս ամսում:

Կաթի արտադրության գծով իր պարտավորությունները հաջող է կատարում նաև Բռունի կոլտնտեսությունը: Նա անցյալ տարվա համեմատությամբ ամեն մի կովից ավելի է ստացել 73 լիտր կաթ: Շատ կթվորներ ավելի բարձր արդյունքներ ունեն: Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, կթվորուհի Ամալյա Մաշուրյանը իրեն խնամքին հանձնված ամեն մի կովից կթել է 1.700 լիտր կաթ, որը զգալիորեն ավելի է անցյալ տարվա ստացածից: Նա 12 կովից ստացել է նույնքան առողջ հորթ և այժմ լավ խնամքի պատճառով նրանք օր-օրի վրա աճում և մեծանում են: Կաթի արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու գծով իրենց ստանձնած պարտավորությունները հաջող են կատարում նաև շրջկենտրոնի, Այգեձորի, Շուռնուխի և ուրիշ կոլտնտեսությունները:

Մեր կոլտնտեսությունները զգալի աշխատանք են կատարում նաև մսի արտադրությունը ավելացնելու գծով ստանձնած պարտավորությունները կատարելու համար: Դեռ տարեսկզբից առանձնացվել են որոշակի քանակությամբ անասուններ և դրվել բտման



digitised by A.R.A.R.@

տակ։ Այդ պատճառով էլ կոլտնտեսությունը շաղ միս է հանձնում պետությանը։ Անցյալ տարի պետությանը վաճառած մեր ամեն մի եղջերավոր անասունի քաշը կազմեց 208 կիլոգրամ, ոչխարինը՝ 58 կիլոգրամ, իսկ հիմա պետությանը վաճառած յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի միջին քաշը կազմում է 270—280 կիլոգրամ, ոչխարինը՝ 50, խոզինը՝ 70—80 կիլոգրամ։ Իսկ առանձին կոլտնտեսություններում ավելի բարձր է մսի արտադրությունը։ Խանածախ գյուղի կոլտնտեսությունը, որի նախագահն է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Գ. Բաղդասարյանը, 125 տոկոսով կատարեց պետությանը մսի վաճառքի առաջին կիսամյակի պլանը։ Նրա վաճառած յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի միջին քաշը կազմում է 300—320 կիլոգրամ։ Նա վաճառում է նաև ոչխարի և խոզի գեր միս։

Մսի արտադրության գծով իրենց պարտավորությունները հաջողությամբ են կատարում Գորիսի շրջկենտրոնի, Քարաշենի, Արավուսի, Խնձորեսկի և շատ ուրիշ կոլտնտեսություններ։

Հաջողությամբ են կատարվում նաև բրդի արտադրության գծով ստանձնած պարտավորությունները։ Միայն առաջին խուզի ժա-



մանակ մեր կոլտնտեսությունները ստացել են 1.050 ցենտներ բուրդ, որը զգալիորեն ավել է անցյալ տարվա ստացածից։ Խնձորեսկ գյուղի ոչխարաբույծները պարտավորվել են ամեն մի ոչխարից ստանալ 4,5 կիլոգրամ բուրդ։ Նրանք այդ պարտավորությունը կատարեցին միայն առաջին խուզից։ Անվանի հովիվներ Ավագ Աթաբեկյանը, Սուրեն Գիլավյանը, Արտաշես Ակլունցը և ուրիշներ միայն գարնանային խուզի ժամանակ յուրաքանչյուր ոչխարից ստացան 4,5—5,5 կիլոգրամ բարձրորակ բուրդ։ Կոլտնտեսությունը ամբողջ բուրդը վաճառեց պետությանը և նրա դիմաց ստացավ 750 հազար ռուբլի։

Խնձորեսկի հովիվներից ետ չեն մնում նաև Տեղ, Կորնիձոր, Խանածախ, Գորիս, Քարահունջ և ուրիշ գյուղերի հովիվները։

Շնորհիվ մեր անասնապահների նվիրված աշխատանքի, շրջանի կոլտնտեսությունները հաջողությամբ կատարեցին և գերակատարեցին պետությանը կաթի, մսի, բրդի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների վաճառքի առաջին կիսամյակի պլանները։ Այդ աշխատանքները թափով է ընթանում նաև հիմա։

Լայնորեն ծավալելով սոցիալիստական



digitised by A.R.A.R.@

մրցությունը, մեր շրջանի կոլտնտեսությունները ձգտում են մինչև հոկտեմբերի մեկը լրիվին ավարտել պետությանը կաթի, մսի, բրդի, ձվի, ծխախոտի և գյուղատնտեսական մյուս մթերքների վաճառքի պլանները։

Կոլտնտեսային գյուղի աշխատավորները պատվով են կատարում նաև կերերի կուտակման գծով իրենց ստանձնած պարտավորությունները։ Նրանք խոստացել են խոտհարքների յուրաքանչյուր հեկտարից հավաքել 40 ցենտներ ցանովի և 20 ցենտներ բնական խոտ, պատրաստել 37 հազար տոննա սիլոս, կուտակել 22 հազար տոննա խոտ և 21 հազար տոննա ծղոտ։ Հաջողությամբ կատարվեցին այդ պարտավորությունները։ Խելացիորեն օգտագործելով աշխատավոր ձեռքը և տրանսպորտը, կոլտնտեսություններում հաջողությամբ շարունակվում են կերերի կուտակման աշխատանքները, իսկ այդ գծով մեր հնարավորությունները շատ են։ Կոլտնտեսային գյուղի աշխատավորները չթուլացնելով ստեղծված աշխատանքային մեծ թափը, օրերս նոր պարտավորություններ ստանձնեցին՝ յոթնամյակի առաջին տարում կուտակել 25 հազար տոննա խոտ, 23 հազար տոննա ծղոտ, 60 հազար ցենտներ կերի արմատապտուղներ, պատրաստել 40



հազար տոննա սիլոս։ Բացի այդ, նրանք պարտավորվել են նաև շրջանի բոլոր կոլտնտեսությունների պահանջները կորնգանի սերմացուով ապահովելուց բացի, հինգ հազար ցենտներ կորնգանի բարձրորակ սերմացու տրամադրել պետությանը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին բաշխելու համար։ Այժմ մեր կոլտնտեսություններում չթուլացող տեմպով շարունակվում են նաև այդ պարտավորությունների կատարումը։ Կորնիձոր գյուղի Կիրովի անվան կոլտնտեսությունը շրջանում առաջինը ավարտեց խոտի կուտակման և սիլոսի պատրաստման գծով ստանձնած իր պարտավորությունները։

Տեղ գյուղի աշխատավորները եռանդուն աշխատանք են կատարում կերերի կուտակման գծով։ Արդյունավետ է օգտագործվում ամեն մի րոպեն և այդ պատճառով կոլտնտեսությունը այդ ժամանակամիջոցում կուտակել է 2.500 տոննա խոտ և 3.200 տոննա սիլոս։ Կերի սիլոսացումը շարունակվում է։ Մի քանի օրից հետո նրանց կուտակած սիլոսը կհասնի 4.000 տոննայի։ Կերերի կուտակման գծով լավ աշխատանք է կատարում Խնձորեսկ գյուղի կոլտնտեսությունը։ Խոտհընձի հենց առաջին օրը մեխանիզատորները, ավտովարորդները, կոլտնտեսականները



Госбиблиотека Арм. ССР

digitised by A.R.A.R.@

դուրս եկան դաշտ։ Մրցություն ծավալվեց բրիգադաների, մեխանիզատորների և կոլտնտեսականների միջև։ Ամեն երեկո ամփոփվում էին մրցության արդյունքները։ Այս միջոցառումների շնորհիվ կոլտնտեսությունը երկու շաբաթում ավարտեց կորնգանի հունձը, հավաքել և դիզել է 2.500 տոննա խոտ։ Սակայն Խնձորեսկը ունի խոտի ավելի շատ պաշարներ։ Նրանք օրերս վերանայեցին իրենց ստանձնած պարտավորությունները և որոշեցին լրացուցիչ հավաքել 800 տոննա խոտ, առանց հացահատիկի բերքահավաքին խանգարելու։ Կազմակերպված ու խանդավառ աշխատանքի լավ օրինակներ կարելի է բերել շրջկենտրոնի կոլտնտեսությունից։ Այստեղ յուրաքանչյուր կովի համար արդեն պատրաստվել է 7,5 տոննա սիլոս։

Մեր կոլտնտեսությունները հաջողությամբ են կատարում նաև մեղվաբուծության, թռչնաբուծության, շերամապահության և տընտեսության մյուս ճյուղերի գծով ստանձնած պարտավորությունները։

Այս ցուցանիշները ինչ խոսք, որ մեր կոլտնտեսությունների միայն առաջին լուրջ քայլերն են, դեռ շատ աշխատանք ունեն նրանք կատարելու նաև առաջիկայում։

---

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

# ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՄԱՆ ԵՎ ԱՎՏՈՄԱՏԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

## Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Երևանի պահածոների գործարանը ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության խոշորագույն ձեռնարկություններից է։ Պահածոյագործների կոլեկտիվը վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարել արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, հնացած սարքավորումները բարձր արտադրողականությամբ աշխատող սարքավորումներով փոխարինելու բնագավառում։ Ստեղծված է մեքենայացված հոսքային տեխնոլոգիական գծեր տոմատի, բանջարեղենի, խավիարի, կանաչ ոլոռի արդյունաբերական մշակության համար։

Տոմատի ցեխում 1958 թվականին կենսագործված տեխնիկական կազմակերպչական միջոցառումները և արտադրական տարածությունների արդյունավետ օգտագործումը հնարավորություն տվեց քիչ բանվորա-



digitised by A.R.A.R.@

կան ուժ ծախսելով ավելացնել թողարկվող արտադրանքի քանակը, բարելավել նրա որակը։ Այդ նույն ցեխը 1958 թվականին թողարկեց 21 միլիոն 700 հազար հաշվային տուփ տոմատ պահածոներ կամ 1957 թվականի համեմատությամբ 5,5 միլիոն տուփով ավելի։ Պլանով նախատեսված բարձր տեսակի արտադրանքի առաջադրանքը գերակատարվեց 7 տոկոսով։ Թողարկվող արտադրանքի 95 տոկոսը ընդունվել է որպես բարձր տեսակի սննդամթերք։ Եթե 1957 թվականին 1000 հաշվային տուփ տոմատ-պաստայի արտադրության վրա միջին հաշվով ծախսվել է 1,85 մարդ-օր, ապա 1958 թվականին այն կազմել է 1,43 մարդ-օր։ Ցեխի ռիթմիկ և բարձր արտադրողական աշխատանքը միաժամանակ հնարավորություն տվեց ստացվող հումքը ժամանակին մշակել, չտալով շաքարանյութի և չոր նյութերի կորուստ, դրա շնորհիվ ցեխի աշխատողները 1958 թվականին տվեցին մոտ 1100 տոննա կարմիր պոմիդորի խնայողություն։

Լուրջ բարեփոխումներ կատարվեցին նաև բանջարեղենի մյուս ցեխերում։ Տեխնիկական-կազմակերպչական աշխատանքների արդյունքը եղավ այն, որ գործարանը տարեցտարի ավելացրեց թողարկվող արտա-



դրանքի քանակը, բարելավեց նրա որակը, բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը և իջեցրեց արտադրանքի ինքնարժեքը։ Այսպես՝ 1958 թվականին գործարանը թողարկեց մոտ 38 տոկոսով ավելի պահածոներ, քան 1955 թվականին էր թողարկել։ Արտադրանքի աճի հետ զուգընթաց, անընդհատ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։ Եթե 1955 թվականին յուրաքանչյուր բանվոր թողարկել էր 29.700 հաշվային տուփ զանազան տեսակի պահածո, ապա 1958 թվականին այն հասավ 41.370 հաշվային տուփի։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանային առաջադրանքը 2,4 տոկոսով գերակատարելու շնորհիվ գործարանը 1958 թվականին ստացավ 1.548 հազար ռուբլի արտապլանային օգուտ։

Տեխնոլոգիական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ուղղությամբ կատարվող աշխատանքները գործարանում շարունակվում են։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանը զարգացման մեծ հեռանկարներ է բացում նաև մեր գործարանի առջև։ Յոթնամյակի տարիներին գործարանը բնակչությանը կտա մոտ 300 միլիոն հաշվային տուփ մրգի և բանջարեղենի պա-



digitised by A.R.A.R.@

հածոներ, այսինքն այնքան, որքան նա արտադրել է անցյալ 12 տարիների ընթացքում։

Մտնելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները հաշվի առան եղած հնարավորություններն ու ռեզերվները և ստանձնեցին բարձր պարտավորություններ։ Նրանք խոստացան 1963 թվականին հասնել պահածոների թողարկման 1965 թվականի համար նախատեսված մակարդակին և մրցման հրավիրեցին Օդեսայի, Խաչմազի պահածոների կոմբինատների և Գորիի ու Հոկտեմբերյանի գործարանների կոլեկտիվներին։

Այդ մեծ ու պատվավոր խնդիրը հաջողությամբ կատարելու համար գործարանի կոլեկտիվը ընթացիկ տարում զգալի աշխատանք է կատարել նորագույն սարքավորումների տեղադրման, արտադրության «նեղ» տեղերի վերացման, արտադրական տարածությունների ընդլայնելու և եղած կարողությունները ավելի արդյունավետ օգտագործելու ուղղությամբ։ Օրինակ, ցածր արտադրողականություն ունեցող մեքենաներն ու սարքավորումները, բարձր արտադրողականությամբ աշխատող մեքենաներով փոխարի-



նելու շնորհիվ բանջարեղենի ցեխի աշխատողները ընթացիկ տարում բնակչությանը կտան մոտ 3 միլիոն հաշվային տուփ պահածո ավելի, քան տվել են 1958 թվականին։

Գործարանի մի խումբ ինժեներա-տեխնիկական աշխատողների ուժերով մշակվել է մրգի ցեխի վերակառուցման պլանը, որը հավանություն է գտել և հաստատվել ժողտնտխորհի սննդարդյունաբերության վարչության կողմից։ Այդ նախագծով կատարված նախնական վերակառուցումը հնարավորություն տվեց մրգի ցեխում ավելի ռացիոնալ օգտագործել արտադրական տարածությունները։ Պահածոների արտադրության մեջ մրգի տեսակավորումն ու նրա միջից կորիզների անջատումը համարվում է աշխատատար պրոցես։ Այդ աշխատանքով զբաղվում են մեծ թվով բանվորներ։ Երբ ցեխում տեղադրվեց մրգից կորիզը անջատող մեքենա, նա փոխարինեց 15 բանվորի։ Տուփերի վրա կափարիչներ ամրացնող հին մեքենաները փոխարինվեցին նոր, բարձր արտադրողականությամբ աշխատող մեքենաներով։ Շուտով տոմատի ցեխից մրգի ցեխը ապակյա խողովակներով կփոխադրվի տոմատի հյութ, որտեղ վերջնական մշակումից հետո կլցվի տուփերի մեջ։ Մրգի ցեխի վե-



digitised by A.R.A.R.@

րակառուցման միջոցով զգալի չափով ավելացել է մրգի կոմպոտների թողարկումը։

Արտադրության «նեղ» տեղերից մեկը գոլորշու և ջրի պակասն է։ Այդ բացը հատկապես ուժեղ կերպով զգացվում է կարմիր պոմիդորի և մյուս բանջարեղենի մշակման ժամանակ, երբ գոլորշու պակաս լինելու հետևանքով սարքավորումները լրիվ կարողությամբ չեն աշխատում։ Այդ թերությունը վերացնելու նպատակով արդեն տեղադրվել են երկու նոր և խոշոր շոգեկաթսաներ, որոնցից մեկն արդեն հանձնվել է շահագործման, իսկ մյուսը շահագործման կհանձնվի մոտ օրերս։ Նշված շոգեկաթսաների տեղադրումով կրկնակի չափով ավելացավ գոլորշու քանակը։

Տեխնիկական կատարելագործման և ավտոմատացման գործում իրենց ավանդն են մտցնում գործարանի ռացիոնալիզատորներն ու նորարարները։ Օրինակ, մեխանիկական ցեխի վարիչ Ա. Գևորգյանի ռացիոնալիզատորական առաջարկությամբ մեքենայացման ենթարկվեց դդմիկի և բադրիջանի մանրացման պրոցեսը։ Նախկինում այդ աշխատանքը կատարվում էր ձեռքի միջոցով և յուրաքանչյուր հերթափոխում զբաղեցնում էր 10—15 բանվոր։ Ներկայումս այդ աշխատանքը կատարվում է մեկ բանվորի միջոցով։ Փականագործ Ա. Հակոբյանի առաջարկությամբ տոմատի ցեխի երկրորդ հարկից պատրաստի արտադրանքը առաջին հարկ իջեցնելու համար կառուցվեց ուղղահայաց կոնվեյեր։ Գործարանի շոգեկաթսայատանը լայն կիրառում է ստացել ինժեներ Ա. Քեչեջյանի առաջարկությամբ պատրաստված նոր տիպի էլեկտրոնային ազդանշանը։



Արտադրության մեջ լայն կիրառում են ստացել նաև փականագործ Ա. Ենգոյանի, Գ. Հակոբյանի, Վ. Ծատուրյանի և մյուսների նորարարական առաջարկությունները։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը միջոցառումներ մշակեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական պրոգրեսը ապահովելու վերաբերյալ պարտիայի XXI համագումարի պատմական որոշումները կենսագործելու ուղղությամբ։ Պլենումի դիմումը ուղղված Սովետական Միության բանվորներին և բանվորուհիներին, սովետական ինտելիգենցիային, բոլոր աշխատավորներին, ջերմորեն ընդունեցին նաև մեր գործարանի աշխատողները։

Գործարանի կոլեկտիվը ընթացիկ տարվա առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարեց 116,8 տոկոսով։

---

# ՅՈԹՆԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

*Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուր բուռն թափով ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը յոթնամյակի առաջին տարվա պլանները ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Մեր ռեսպուբլիկայի արհեստագործական կոոպերացիայի արտելականները նույնպես մտել են սոցիալիստական մրցության մեջ և պայքարում են երկրին ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք տալու համար։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

★ *Հայաստանի արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունները ժամկետից շուտ կատարեցին կիսամյա պլանը և պլանից դուրս երկրին տվեցին 5 միլիոն 700 հազար ռուբլու արտադրանք։*

★ *1965 թվականին Հայարդխորհրդի արտելները, 1958 թվականի համեմատությամբ, համախառն արտադրանքի թողարկումն ավելացնելու են 38 տոկոսով։*



★ *1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, 50 տոկոսով ավելանալու է գորգերի, 181 տոկոսով ոսկերչական-ակնագործական իրերի, 100 տոկոսով ստվարաթղթի, 100 տոկոսով թղթի արտադրությունը։ Նույն ժամանակաշրջանում աշխատավորներին կվաճառվի 5 միլիոն ռուբլու ոսկեղեն և ակնեղեն իրեր։*

★ *1965 թվականին 45 տոկոսով ավելանալու է աշխատավորների կենցաղային սպասարկումը։ Եթե 1958 թվականին 11 միլիոն ռուբլու չափով է կատարվել բնակչության կենցաղային սպասարկում, ապա 1965 թվականին այն հասնելու է 16 միլիոն 500 հազար ռուբլու։*

★ *Այս տարի Հայարդխորհրդի արտելները 24 նոր տեսակի արտադրանք կթողարկեն։ 1960 թվականին կյուրացվի և մասսայական վաճառքի կհանվի մոտ մեկ միլիոն ռուբլու արհեստական զամշ։ Մոտ ժամանակներս Ս. Մ. Կիրովի անվան գործարանի մնացուկների և ռեսպուբլիկայի փայտամշակման ձեռնարկությունների թեփի բազայի հիման վրա կազմակերպվելու է ավտոմեքենաների կարևոր մասերի արտադրություն։*

★ *Երբ նախորդ տարիներին արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների զարգացումն ընթանում էր հիմնականում կարի, կաշվե կոշկեղենի, մանածագործության, փայտամշակության և մետաղամշակության արտադրության ուղղությամբ, ապա*



digitised by A.R.A.R.@

տյժմ զարկ է տրվում գորգերի, գեղարվեստական-ոսկերչական իրերի, ժողովրդական սպառման և բնակչության սպասարկման համար անհրաժեշտ ապրանքների արտադրությանը։

★ Այժմ արհեստագործական կոոպերացիան մեծ ուշադրություն է դարձնում նաև արդյունաբերական մնացուկների վերամշակման վրա։ Նախատեսվում է այդ մնացուկներից պատրաստել 500 հազար էլեկտրամեկուսիչ, 5 հազար փոստարկղ, 5 հազար աղբարկղ, 5 հազար զույգ տաք կոշիկ, 35 հազար զույգ կաշվե կոշիկ, 12 հազար զույգ բրդե գուլպա և այլն։

★ Այս տարվա 6 ամսում արհեստագործական կոոպերացիայի մետաղամշակման և փայտամշակման արտելները երկրին տվեցին 10 միլիոն 751 հազար 300 ռուբլու արտադրանք, նախատեսված պլանը կատարելով 106 տոկոսով։

★ Արհեստագործական կոոպերացիայի տեքստիլմանածագործական արտելները այս տարվա առաջին կիսամյակում թողարկել են 24 միլիոն 81 հազար 100 ռուբլու արտադրանք, պլանով նախատեսված 21 միլիոն 187 հազար ռուբլու արտադրանքի փոխարեն։

★ Նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի գորգագործական արտելները գործել և վաճառքի են ուղարկել 26 միլիոն 87 հազար 900 ռուբլու գորգ, պլանը կատարելով 110,3 տոկոսով։ Հատկապես բարձր ցուցանիշների են հասել Ստեփանավանի, Թալինի,



Ախտայի, Սևանի և շատ ուրիշ գորգագործական արտելներ։

★ Երևանի գորգի արտելը այս տարվա հունվարից մինչև հունիս ամիսը երկրին տվել է 2 միլիոն 317 հազար 700 ռուբլու գորգ, Կամոյի շրջանի գորգագործները՝ 2 միլիոն 338 հազար 500 ռուբլու, Մարտունու շրջանինը՝ 2 միլիոն 78 հազար 300 ռուբլու, Բասարգեչարինը՝ 1 միլիոն 76 հազար 100 ռուբլու և այլն։

★ Նույն կիսամյակում կարի արտելները 8 միլիոն 114 հազար ռուբլու արտադրանք են տվել, պլանը կատարելով 106,6 տոկոսով։

★ Խոշոր հաջողությունների են հասել արհեստագործական կոոպերացիայի կոշիկի արտելները, որոնք 1959 թվականի առաջին կիսամյա պլանը կատարելով 102,9 տոկոսով, երկրին տվել են 14 միլիոն 767 հազար 900 ռուբլու կոշիկ։

★ Միայն «Սոցարշավ» արտելը առաջին կիսամյակում արտադրել է 2 միլիոն 298 հազար ռուբլու կոշկեղեն, պլանը կատարելով 107,9 տոկոսով, «Կոշկագործ» արտելը՝ 3 միլիոն 330 հազար 300 ռուբլու կոշկեղեն, «Կարմիր Աստղ» արտելը՝ 1 միլիոն 333 հազար 300 ռուբլու կոշկեղեն և այլն։

★ Առաջիկայում նոր եռանդով կաշխատեն արհեստագործական կոոպերացիայի արտելականները և հաղթանակով դուրս կգան համաժողովրդական սոցիալիստական մրցությունից։

---

digitised by A.R.A.R.@

# ԲՈՒԼՂԱՐ ԺՈՂՈՎՐԴԻ ՓԱՌԱՊԱՆԾ ՏՈՆԸ

1944 թվականի սեպտեմբերի 9-ին Սովետական Բանակի օգնությամբ բուլղար ժողովուրդը տապալեց միապետական-ֆաշիստական կարգը և հաստատեց ժողովրդական իշխանություն։

Բուլղարիայի պատմության մեջ առաջին անգամ և հավիտյան իշխանությունն անցավ ժողովրդի ձեռքը, քաղաքի և գյուղի աշխատավորների ձեռքը, որոնք դարձան իրենց բախտի լիիրավ տերը։

Ժողովրդական իշխանության տարիներին, առաջին և երկրորդ հնգամյա պլանների (1948—1957 թ. թ.) կենսագործման շնորհիվ, արմատապես փոխվեց երկրի դեմքը։ Հետամնաց ագրարային երկրից Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան վերածվեց ինդուստրիալ-ագրարային սոցիալիստական երկրի՝ կոոպերատիվ և մեքենայացված գյուղատնտեսությամբ։

Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի



յոթերորդ համագումարը, որը տեղի ունեցավ 1956 թվականի հունիսին, արձանագրեց, որ սոցիալիստական արտադրահարաբերությունները լրիվին տիրապետում են ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ՝ արդյունաբերության, առևտրի, գյուղատնտեսության և վարկային սիստեմում։ Սոցիալիստական սեկտորին ընկնում է՝ արդյունաբերական արտադրանքի 98 տոկոսը, գյուղատնտեսական արտադրանքի ավելի քան 90 տոկոսը և մանրածախ ապրանքաշրջանառության 99 տոկոսը։

Վիճակագրական ստույգ տվյալների համաձայն արդյունաբերական արտադրանքի և գյուղատնտեսական արտադրանքի հարաբերակցությունը 1939 թվականին կազմում էր 24,8 և 75,2 հօգուտ գյուղատնտեսության։ Արդյունաբերության մեջ զբաղված բանվորների թիվը 100 հազարից չէր գերազանցում։ Երկրում սուր կերպով զգացվում էր արդյունաբերական ապրանքների պակասություն։ Այսպես, բնակչության ամեն շնչին տարեկան ընկնում էր ընդամենը 4 կիլոգրամ շաքար, 5,5 մետր բամբակյա կտորեղեն և 1,3 կիլոգրամ օճառ։

Ծանր արդյունաբերությունը (էլեկտրաէներգիայի արտադրությունը, քարածխի հա-



digitised by A.R.A.R.@

նույթը, մետալուրգիան, մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը և այլն) գտնվում էին կամ զարգացման սաղմային վիճակում, և կամ բոլորովին գոյություն չունեին։

Բուրժուական Բուլղարիայի արդյունաբերությունը չուներ իր հումքային բազան։ Թեթև արդյունաբերության համար անհրաժեշտ հումքի մոտ 65 տոկոսը ներմուծվում էր արտասահմանից։

Ավելի լավ պատկեր չէր ներկայացնում միապետական Բուլղարիայի գյուղատնտեսությունը, որն աչքի էր ընկնում իր արտակարգ պրիմիտիվությամբ ու անշահութաբերությամբ։ Երկրում եղած մոտ 550 հազար արորները, 276 հազար գութանները և միայն 3.500 տրակտորները (վերջինները պատկանում էին միայն խոշոր սեփականատերերին) չէին էլ կարող ապահովել գյուղատնտեսության բարձր եկամտաբերությունը։ 200 հազար տնտեսության կամ երկրի բոլոր տընտեսությունների մոտ 25 տոկոսը զուրկ էր բանող անասուններից, 165 հազար տնտեսություններ չունեին գյուղատնտեսական գործիքներ։

Այդ բոլորի պատճառով էլ Բուլղարիայի բացառիկ նպաստավոր հողակլիմայական



պայմաններում հացահատիկային ամենահիմնական կուլտուրայի՝ ցորենի բերքատվությունը չէր գերազանցում 11—12 ցենտներից յուրաքանչյուր հեկտարում։

Տնտեսության վիճակը պարզ լինելու համար ավելացնենք, որ ամեն մի շնչին ընկնող եկամտի տեսակետից Բուլղարիան Եվրոպայում գրավում էր ամենահետին տեղերից մեկը։

Տասնհինգ տարի առաջ այդպիսի տխուր ժառանգություն ստանալով անցյալից, Բուլղարիայի ժողովրդական իշխանությունը և բուլղարական Կոմունիստական պարտիան ժողովրդի բոլոր ուժերն ու ընդունակություններն ուղղեցին դեպի երկրի էկոնոմիկայի արագ վերականգնումը և անշեղ վերելքը։ Հենվելով երկրի արտադրողական ուժերի առջև ժողովրդա-դեմոկրատական կարգերի բացած անսահման հնարավորությունների վրա, ժողովրդական իշխանությունը մշակեց Բուլղարիայի սոցիալիստական զարգացման պատմական ծրագիրը։ Վերականգնման աշխատանքները ավարտելուց և 1948 թվականին արտադրության նախապատերազմյան մակարդակին հասնելուց հետո բուլղար ժողովուրդը մեկը մյուսի ետևից հաջողությամբ կենսագործեց առաջին (1949—1952 թ. թ.)



digitised by A.R.A.R.@

և երկրորդ (1952—1957 թ. թ.) հնգամյա պլանները։

Առանձնապես աչքի ընկնող հաջողություններ ձեռք բերվեցին երկրորդ հնգամյակի ընթացքում։ Այդ տարիներին շահագործման հանձնվեցին 288 հազար կիլովատ կարողությամբ նոր էլեկտրակայաններ, 1939 թվականի 111 հազար կիլովատի դիմաց։ Միայն 1957 թվականին երկրում արտադրվեց 2 միլիարդ 656 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն մոտ երկու անգամ ավելի, քան 1952 թվականին և ութ անգամ ավելի, քան 1939 թվականին։

Նոր հանքերը շահագործման հանձնելու, հները ընդլայնելու և տեխնիկան լայնորեն կիրառելու շնորհիվ մեծ չափով աճեց ածխի հանույթը։ 1957 թվականին ածխի հանույթը կազմեց 11 միլիոն 889 հազար տոննա, 1952 թվականի 7 միլիոն 410 հազար տոննայի դիմաց։

Լայն զարգացում ստացավ մետալուրգիան։ Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը 1957 թվականին արտադրեց 117 հազար տոննա չուգուն, 178 հազար տոննա պողպատ և 100 հազար տոննա գլանվածք։ Սկսվեց պղնձաձուլական գործարանի կառուցումը։

Երկրորդ հնգամյակի տարիներին կառուց-



վեցին Գեորգի Դիմիտրովի անվան նավաշինարանը, Ռուսեի գյուղատնտեսական մեքենաների գործարանի երկրորդ հերթը, Վիդին քաղաքի պոմպերի գործարանը, Կարլ Մարքսի անվան սողայի գործարանը, ընդլայնվեցին «Մարիցա» տեքստիլ կոմբինատը և «Բալկան» գործարանը։ Շարք մտան սննդի արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ։

1939 թվականի համեմատությամբ էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացավ ութ անգամ, սև մետալուրգիայինը՝ 35 անգամ, գունավոր մետալուրգիայինը՝ 113 անգամ, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 17 անգամ, շինանյութերինը՝ 15 անգամ և այլն։

Այս բոլորի հետևանքով լուրջ փոփոխություններ կրեց արդյունաբերական արտադրանքի և գյուղատնտեսական արտադրանքի հարաբերակցությունը, որը 1957 թվականին կազմեց 67,4 և 32,6 հոգոտ արդյունաբերության։

Արձագանքելով Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի կոչին, երկրի գյուղացիությունը մեծ խանդավառությամբ ձեռնամուխ եղավ աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսությունների կազմա-



digitised by A.R.A.R.@

կերպմանը (ՏԿՁԽ), որը հնարավորություն տվեց լայնորեն օգտագործել գյուղատնտեսական առաջնակարգ տեխնիկան, կիրառել գիտության նվաճումները և առաջավոր փորձը, զգալիորեն բարձրացնել գյուղատնտեսական արտադրության մակարդակը։ 1958 թվականին երկրի դաշտերում աշխատում էին 27 հազար 721 տրակտոր, 5.346 կոմբայն, 4.890 կալսիչ, 6.700 բեռնատար ավտոմեքենա և շատ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։

Կոոպերատիվներում անընդհատ ավելանում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ 1957 թվականին պետական հողագործական տնտեսություններում ցորենի միջին բերքատվությունը յուրաքանչյուր դեկարից կազմեց 230,5 կիլոգրամ։ ՏԿՁԽ-ներում՝ 172,5 կիլոգրամ, իսկ մասնավոր տնտեսություններում՝ 124,8 կիլոգրամ։ Բերքատվությունը բարձր էր նաև եգիպտացորենի, բամբակի, ծխախոտի և մյուս կուլտուրաների գծով։

Տարեցտարի ավելանում է անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Բուլղարիայի արդյունաբերության և գյուղատնտեսության անշեղ աճը հնարավորություններ ստեղծեց ազգային եկամտի ավե-



լացման, ժողովրդի նյութական և կուլտուրական պայմանների բարելավման համար։ 1939 թվականի համեմատությամբ երկրի ազգային եկամուտն աճել է մոտ երկու անգամ։ Դրա հետևանքով զգալիորեն ավելացել են աշխատավորների եկամուտները։ 1948 թվականի համեմատությամբ բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդն ավելացել է մոտ 3 անգամ։ Եթե 1954 թվականին ՏԿՁԽ-ների յուրաքանչյուր անդամին մեկ աշխօրի դիմաց տրվող վարձը կազմում էր 8,85 լև, ապա 1957 թվականին այն կազմեց 17,47 լև, իսկ շատ ՏԿՁԽ-ներում էլ՝ 20, 30 և նույնիսկ 40 լև։

Արդյունաբերության և գյուղատնտեսության անշեղ վերելքի, աշխատավորների եկամուտների անընդհատ ավելացման հիման վրա զգալիորեն աճեց ժողովրդի գնողունակությունը։ Այսպես, օրինակ, 1952 թվականի համեմատությամբ, 1957 թվականին հիմնական սպառողական ապրանքների վաճառքն ավելացել է՝ ալյուրինը՝ 213,7 տոկոսով, մսինը՝ 179,9 տոկոսով, մսամթերքներինը՝ 221 տոկոսով, շաքարինը՝ 162 տոկոսով, բրնձինը՝ 208,4 տոկոսով, բամբակյա կտորեղենինը՝ 184,3 տոկոսով, բրդյա կտորեղենինը՝ 222,2 տոկոսով, կոշկեղենինը՝ 217,2 տոկոսով, ռա-



digitised by A.R.A.R.@

դիրընդունիչներինը՝ 939 տոկոսով և այլն։

Ժողովրդի բարեկեցությունն անհնար է պատկերացնել առանց նրա կուլտուրայի վերելքի։ Մինչև 1944 թվականի սեպտեմբերը ամեն տարի ավելի քան 100 հազար երեխա դպրոցից դուրս էր մնում։ Երկրի ավելի քան 1.658 բնակավայրերում ընդհանրապես դըպրոցներ չկային։ Այժմ այլ է պատկերը։ Հանրակրթական դպրոցներում դասավանդող ուսուցիչների թիվը 1939 թվականի 28 հազար 625 մարդուց 1957 թվականին հասել է 46 հազար 627-ի։ Եթե 1939 թվականին երկրի բուհերում սովորում էին 10 հազար 169 մարդ, ապա նրանց թիվը 1957 թվականին հասավ 36 հազար 705-ի։ Թատրոնների թիվը 1939 թվականի համեմատությամբ ավելացել է 3,5 անգամ, կինոսեանսների քանակը՝ 9 անգամ։

Բուլղար ժողովուրդը վստահ է լուսավոր ապագայի նկատմամբ, ամրապնդելով իր մեծ բարեկամությունը Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ, հաստատակամորեն ընթանում է դեպի կոմունիզմ։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

---

## ՎԻԵՏՆԱՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

1945 թվականին ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ Սովետական Միության տարած հաղթանակի շնորհիվ Վիետնամի ժողովուրդը, որը միավորվել էր Վիետմին կոչված միացյալ ճակատում, կոմունիստների ղեկավարությամբ ապստամբեց, տապալեց օտարերկրյա գաղութարարների ու ֆեոդալների իշխանությունը։ Սեպտեմբերի 2-ին Հանոյում հռչակվեց Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Վիետնամում խաղաղությունը երկար չտևեց։ ԱՄՆ-ի դրդմամբ ֆրանսիական կառավարող շրջանները հրաժարվեցին ճանաչել Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան և որոշեցին ուժով վերականգնել իրենց տիրապետությունը։ Նրանց օգնության եկան ամերիկյան և անգլիական իմպերիալիստները։ Վիետնամի ժողովուրդն ստիպված էր զենք վերցնել և ութ տարի շարունակ հերոսական պայքար մղել թշնամու դեմ։ 1954 թվականին Դիեն-Բիեն-Ֆուի մոտ



digitised by A.R.A.R.@

տարած պատմական հաղթանակի շնորհիվ Վիետնամում նորից վերականգնվեց խաղաղությունը։

Հյուսիսային Վիետնամում բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի հերոսական ջանքերի, ինչպես նաև եղբայրական երկրների և առաջին հերթին Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի անշահախնդիր օգնության շնորհիվ երկրում վերականգնվեց պատերազմից քայքայված էկոնոմիկան։

Կոնստիտուցիա ընդունելով, իշխանության տեղական օրգաններ ստեղծելով, ժողովրդական կառավարությունը ձեռնամուխ եղավ գյուղատնտեսության բնագավառում էլ ավելի էական միջոցառումների կիրառմանը։ Մինչև 1954 թվականի ռևոլյուցիան Վիետնամում հողի մեծ մասը պատկանում էր օտարերկրացիներին՝ այսպես կոչված «մասնավոր անձանց», գյուղական համայնքներին և պետությանը (դոմինալ հողեր), համայնքների հողերը փաստորեն զավթել էին տեղական կալվածատերերն ու կուլակները, իսկ դոմինալ հողերը գաղութային իշխանությունները վարձակալության էին տալիս այդ նույն «մասնավոր անձանց»։ Մշակվող հողի երեք քառորդը գտնվում էր ֆրանսիական



գաղութարարների ու կալվածատերերի ձեռքին և միայն մեկ քառորդն էր բաժին ընկնում 18 միլիոն մարդ կազմող գյուղացիությանը։ 11 միլիոն գյուղացիներ հողազուրկ էին և ստրկական պայմաններով հողը վարձակալում էին խոշոր հողատերերից, նրանց տալով բերքի երկու երրորդը։ Մնացած 7 միլիոն գյուղացիներից, որոնք հող ունեին, 6 միլիոնը կիսաքաղց էր ապրում։

Կառավարությունը հատուկ դեկրետով 25-ից մինչև 50 տոկոսով իջեցրեց հողի վարձակալության վարձը, արգելեց վաշխառությունը, որը հրեշավոր չափերի էր հասել ֆրանսիական ու ճապոնական տիրապետության տարիներին։

Այդ միջոցառումը լրջորեն բարելավեց Վիետնամի գյուղացիության դրությունը։ Ներկայումս հողի վարձակալության վարձը, օրենքի համաձայն, չի կարող գերազանցել բերքի արժեքի 10 տոկոսից։

Կառավարության կարևորագույն միջոցառումը հանդիսացավ նաև պետական դրամական վարկի և սերմացուի փոխատվության սիստեմ մտցնելը։ Պետությունը գյուղացիներին խոշոր միջոցներ է բաց թողնում գյուղատնտեսական գործիքներ ձեռք բերելու համար, ոռոգիչ կառուցվածքները վերա-



digitised by A.R.A.R.@

կանգնելու, նորոգելու, նորերը կառուցելու համար և այլն։ 1947 թվականին կառավարությունը գյուղացիներին տվեց 16 միլիոն պիաստրի գումարով փոխատվություն, իսկ հաջորդ տարին՝ 50 միլիոն պիաստր միայն գյուղատնտեսական գործիքներ ձեռք բերելու համար. գյուղացիներին օգնելու համար ժողովրդական կառավարության տված վարկերի ընդհանուր գումարը 1952 թվականին կազմեց 15 միլիարդ պիաստր։

Կարճ ժամանակամիջոցում Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան լուծեց երկու հիմնական խնդիր, այն է՝ հիմնականում ավարտեց ագրարային ռեֆորմը և վերականգնեց երկրի էկոնոմիկան, միաժամանակ առաջին քայլերն անելով կուլտուրայի զարգացման ասպարեզում։

Հողային ռեֆորմը ոչնչացրեց կալվածատիրական հողավարձակալության ֆեոդալական սիստեմը։ 1945 թվականից սկսած 2 միլիոն 220 հազար գյուղացիական ընտանիքներ ստացան մոտ 820 հազար հեկտար հող։

Պատերազմից հետո գյուղացիությունը ժողովրդական կառավարության օգնության շնորհիվ կարողացավ ոչ միայն հիմնականում վերականգնել գյուղատնտեսությունը,



այլև մի քանի գյուղատնտեսական կուլտուրաների արտադրությունն ավելացրեց նախկինի համեմատությամբ։ Օրինակ, 1957 թվականի բրնձի բերքատվությունը կազմեց 3 միլիոն 947 հազար տոննա, որը զգալի չափով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Եգիպտացորենի արտադրանքը 1939 թվականի 140 հազար տոննայի համեմատությամբ աճեց մինչև 190,8 հազար տոննայի։

1958 թվականին բրնձի բերքատվությունը հասավ 4,5 միլիոն տոննայի։ Ժողովրդական տնտեսության զարգացման 3-ամյա պլանի համաձայն (որն ընդունվել է 1958 թվականի դեկտեմբերին Ազգային ժողովում), 1960 թվականին ռեսպուբլիկան պետք է ստանա 7,6 միլիոն տոննա բրինձ, զգալի չափով ավելի, քան ստացվել էր ամբողջ նախառևոլյուցիոն Վիետնամում։

Գյուղում աճում է արտադրական կոոպերատիվներ և աշխատանքային փոխօգնության խմբեր ստեղծելու շարժումը։ Եթե 1957 թվականի վերջում երկրում կար ընդամենը 44 գյուղատնտեսական կոոպերատիվներ, ապա 1958 թվականի դեկտեմբերին նրանց թիվը հասավ 4.721-ի։ Գյուղացիական ընտանիքների 65 տոկոսից ավելին ընդգրկված



digitised by A.R.A.R.@

են աշխատանքային փոխօգնության բրիգադներում:

Մեծ և բեղմնավոր աշխատանք է կատարել Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը արդյունաբերության զարգացման բնագավառում: Ֆրանսիական գաղութային տիրապետության ժամանակ Վիետնամը արդյունաբերական տեսակետից հետամնաց երկիր էր: Վիետնամում արդյունաբերության տեսակարար կշիռը չնչին էր:

Արդյունաբերության բնագավառում եղբայրական երկրների, առաջին հերթին Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կողմից ցույց տված օգնության շնորհիվ Վիետնամում վերականգնվել և ընդլայնվել է 28 և կառուցվել արդյունաբերական 52 նոր ձեռնարկություն: Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում ներկայումս կա պետական արդյունաբերական 107 ձեռնարկություն, որոնք խոշոր դեր են խաղում երկրի էկոնոմիկայում:

Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում ապրում է մոտ 22 միլիոն մարդ: Բնակչության հիմնական մասը կազմում են վիետնամցիները՝ մոտ 17 միլիոն մարդ, կամ ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության 77 տոկոսը: Մինչև դեմոկրատական ռեսպուբլի-



կայի կազմակերպումը բնակչության մոտ 90 տոկոսն անգրագետ էր: Ժողովրդական կառավարությունը հատուկ դեկրետով մտցրեց պարտադիր, ձրի տարրական ուսուցում:

Այժմ անգրագիտությունը հիմնականում վերացվել է: Ռեսպուբլիկայի դպրոցներում կա ավելի քան մեկ միլիոն սովորող: Երկրում կա 6 բարձրագույն ուսումնական հաստատություն, այդ թվում համալսարան 4.000 ուսանողով:

Վիետնամի ժողովուրդը, հենվելով էկոնոմիկայի ասպարեզում ձեռք բերած հաջողությունների վրա, ուժեղացնում է պայքարը ամերիկյան ինտերվենտների դեմ, որոնք փորձում են հավերժացնել Վիետնամի պառակտումը: «Մենք, անկասկած, կհաղթենք,— հայտարարել է Հո Շի Մինը,— որովհետև մեր ազատագրական պատերազմը արդարացի պատերազմ է... Մենք, անկասկած, կըհաղթենք, որովհետև մենք սերտորեն համախմբված ենք, մենք ունենք մեկ մտադրություն և վճռականություն՝ մարտնչել: Մենք, անկասկած, կհաղթենք, որովհետև աշխարհի բոլոր դեմոկրատական ժողովուրդները մեզ աջակցում են: Մեր երկարատև դիմադրությունը, անկասկած, հաղթական կլինի»:

Հ. ԱԶԱՏՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Տեխնիկական պրոգրեսը մեր երկրում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական առաջադիմության հիման վրա անշեղորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, *ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումում արտասանած ճառից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 3-ի համարում։*

Արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման հիմքն է, *ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 1-ի համարում։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Տեխնիկական առաջադիմությունը և աշխատանքի արտադրողականության աճը, *ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 34—38, Հայպետհրատ, 1959։*

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի որոշումը տեխնիկական պրոգրեսի միամսյակ անցկացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 4-ի համարում։*



## 2. Ավելի շատ և ավելի բարձրորակ արտադրանք տանք երկրին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

**Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1959 թվականի հունիսի 29-ին,** *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 3-ի և 4-ի համարներում։*

**Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը,** *Հայպետհրատ, 1959։*

**Ամեն կերպ պաշտպանել և արմատավորել նորը, առաջավորը,** *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 30-ի առաջնորդողը։*

## 3. Թույլ չտանք ոչ մի հասկի կորուստ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հարցերը, ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, *էջ 38—45, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, *էջ 38—58, Հայպետհրատ, 1959։*

Կոմբայնավարների պատվի գործը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 5-ի առաջնորդողը։*

## 4. Ավելի շատ սիլոս հանրային հոտին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիա-*






digitised by A.R.A.R.@

*յի XXI համագումարի բանաձևը, էջ 14—15, Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. Խրուշչով— *Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 88—93, Հայպետհրատ, 1956։*

*Պատրաստել 770 հազար տոննա սիլոս, «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 8-ի առաջնորդողը։*

## 5. ՍՍՌՄ ժողովուրդների երկրորդ սպարտակիադան

*(Օգտագործել «Ավանգարդ», «Հայաստանի ֆիզկուլտուրնիկ», «Սովետական Հայաստան» և մյուս թերթերի օգոստոս ամսվա համարներում զետեղված ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադայի մասին նյութերը)։*

## 6. Նոր ուսումնական տարին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը, *էջ 24—25, Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական դաստիարակության հարցերը, ժողովրդական կրթությունը, գիտության և կուլտուրայի զարգացումը, ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, *էջ 125—133, Հայպետհրատ, 1959։*

Սովետական դպրոցի վերակառուցման նոր ուղին. *«Սովետական մանկավարժ» ամսագրի 1959 թվականի 5-րդ համարի առաջնորդողը։*



Դպրոցը պետք է համրնթաց քայլի կյանքի հետ, *որևյց տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 2-րդ համարում։*

## 7. Երկու մեծ տերությունների ղեկավարների հանդիպումը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ պրես կոնֆերանսը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 6-ի համարում։*

*Ի բարօրություն ընդհանուր խաղաղության, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 6-ի համարում։*

Վ. ՊԱՐԱՄՈՆՈՎ.— Ն. Ս. Խրուշչովի և Դ. Էյզենհաուերի փոխայցելությունը ամերիկյան մայրցամաքի կենտրոնական իրադարձությունն է, *հոդված տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 7-ի համարում։*

---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

digitised by A.R.A.R.@

# СОДЕРЖАНИЕ



**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 16** **1959 г.**

ՎՖ 06087 Պատվեր 538 Տիրաժ 8622

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչու-
թյունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր
վարչության № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպեկ